ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ
(ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 3 1956

Վ. ԲԴՈՅԱՆ

# ՀԱՐՍԱՆԵԿԱՆ ԾԵՍԵՐԻ ՈՒ ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐԻ ՆԿԱՐԱԳԻՐ, ԳՐԱՆՑՎԱԾ 14-ՐԴ ԴԱՐՈՒՄ

*Մատենադարանի № 3937 ձեռագիրը քերականական, խրատական, մեկնողական ու քարոզչական նյութերի ժողովածու է, ընդօրինակված Հայոց ՊԺԹ (1370) թվականին։ Ձեռագրի վերջին՝ 192բ—196բ էջերի վրա, մի այլ գրիչ, նույնպես 14-րդ դարի վերջերին, ընդօրինակել է անհայտ հեղինակի մի քարոզ, որը ազգագրական ուշագրավ նյութեր է պարունակում։*

*Քարոզի հեղինակը իր առաջ նպատակ է դրել հայ հարսանեկան ծեսերն ու սովորույթները, որոնք ձևավորվել էին հազարամյակներ առաջ, մեկնաբանել քրիստոնեական եկեղեցու գրքերից և «համեմատությունները» ու «զուգահեռները» անց կացնելով, ցույց տալ, որ, իբր, այդ ծեսերի հիմքում ընկած են եկեղեցական ու աստվածաբանական պատկերացումներ։ Այս տեսակետից անվերնագիր այդ քարոզը զուրկ է որևէ արժեքից։*

*Սակայն հեղինակը իր նպատակից ելնելով, քարոզի յուրաքանչյուր նոր պարբերություն սկսում է հայ հարսանեկան սովորույթների հերթական դրվագների նկարագրությամբ և նոր միայն անցնում է այդ դրվագների մեկնությանը։ Հարսանեկան սովորույթների ցիկլի նկարագրությունը, շնորհիվ այն բանի, որ ձեռագրի վերջից ընկել են թերթեր, մնում է անավարտ։ Սակայն պահպանված պատառիկները, գրանցված լինելով 14-րդ դարի վերջերին՝ մեծ արժեք են ներկայացնում։*

*Հայտնի է, որ հարսանեկան սովորույթների ուսումնասիրման համար հայ ազգագրագիտության տրամադրության տակ կան միայն 19—20-րդ դարերում կատարված նկարագրություններ և չնչին, սակավաթիվ ու անբավարար, ակնարկներ նախորդ դարերից հասած մատենագրական երկերում։*

*Մատենադարանի № 3937 ձեռագրի մեջ պահպանված նկարագրությունը, լինելով ամենահինը և լրիվը, հնարավորություն է ընձեռելու մասնագետներին՝ ուսումնասիրել հայկական միջնադարի հարսանեկան ծեսերն ու սովորությունները և, համեմատելով դրանք 19—20-րդ դարերում կատարված նկարագրությունների հետ՝ ցույց տալ այն փոփոխությունները, որ տեղի են ունեցել այդ ծեսերում 14-րդ դարից հետո ընկած ժամանակաշրջանում։*

*Հրատարակվող հատվածները հատկապես ուշագրավ են այն տեսակետից, որ վկայություն են պահպանել կնոջ գնման (գլխագնի) մասին։ Պարզվում է, որ 14-րդ դարում հայկական ամուսնական ծեսերի մեջ տակավին պահպանվում էին պատրիարխալ-տոհմական սովորույթներ։*

Ուշագրության արժանի է նաև առևանգման հարցին վերաբերող վկայությունը: Մի կողմից գյուղամիջյան ամուսնության դեպքում պսակվողներին եկեղեցի տանելու միջոցին ձիավոր ուղեկիցների հանդես գալը (ձեռագիր, էջ 195ա) և մյուս կողմից եկեղեցուց ամուսնացողներին դուրս բերելիս աջ ու ձախ կողմերից սրերով պաշտպանելու սիմվոլիկ ծեսը (ձեռ. էջ 196ա), առևանգմամբ ամուսնության մնացուկի հետաքրքրական վկայություններ են հանդիսանում: Սրան իբրև լրացում և հակընդդեմ վկայված է, որ հարսնառի մասնակիցներին հետապնդում էին աղջկա համայնքի մարդիկ, որոնք սովորույթի համաձայն «խնդրեն ինչս և ոչ թողուն (երթալ) մինչև առնուն» (ձեռ. էջ 196բ):

Հարսանեկան սովորույթներին վերաբերող քննարկվող նյութերի արժեքը հայկական ընտանեկան հարաբերությունները հանգամանորեն ուսումնասիրելու տեսակետից՝ ակնհայտ է, ուստի մի կողմ թողնելով քարոզի եկեղեցական հեղինակի բանադրական աստվածաբանական մեկնությունները, այստեղ ներկայացնում ենք քարոզի բոլոր այն հատվածները, որոնք պարունակում են հարսանեկան ծեսերի մասին վկայություններ:

## ԲՆԱԳԻՐ

193ա Արդ, նախ սովորութիւն է ազգաց փեսային՝ խնդրել հարսն: Եւ կրկին կերպիւ ընտրեն՝ նախ ի յիւրեանց հաւատոյն, թէ հայ քրիստոնեայ է և թէ այլ քրիստոնեայք, և ապա ի մէջ նոցա յընտիր և պատուական ազգէ մեծատանց և յաղատաց, զի գոն աղքատ և գռեհիկ հայք...:

193բ ...Այսպէս թէ ընտրեսցեն քրիստոն[է]այքն զհաւատովն և զողորմածն և սրբեալ ամուսնութեամբն ընտրեսցեն, զի եղիցին նման բարձրելոյն, որ առ Աբրահամ: Եւ եռես, զի ազգականքն ընտրեն և ոչ փեսայն...:

Երկրորդ. Սովորութիւն է, զի յետ ընտրութեանն երթալ խաւսին և տան թաս գինի ի հայր և ի մայր հարսին, և կամ ի համանմանս նոցին...:

Երրորդ. Սովորութիւն է՝ յամենայն տանի և տարեկանաց գնալ ի տուն հարսին ընծայիւք և կերակրովք: Զայս արար աստուած ի յուրէն յայնմանէ, որ հաճեցաւ յԱբրահամ և ի Մովսէս, յամենայն դարու և ի ժամանակի առաքէր մարգարէս բանիւ և մարգարէութեամբ, նշանօք և արուեստիւք: Վասն որոյ և եկեալքն ի տուն հարսինն, պարտին նմանիլ մարգարէիցն, զի կարասցեն տ[ալ] և հաշտեցուցանել զաւտար ազգիսն առ փեսայն:

Չորրորդ. Սովորութիւն է՝ գնալ քահանայիցն և տանել նշան և այն մատանի կամ ապարանջան կամ գինդ, որ են պատրումն, և կնիք առ հարսն և ի կամս նորա, մինչ զի այլ ոչ գոյ հնար քակել նոցա ի միմեանց...:

194ա Հինգերորդ. Զի յետ նշանացն սովորութիւն է տանել պատրաստութիւն հարսանեացն և տալ զուժիտն՝ հաց և միս [և] գինի և այլ ոչ ինչ, զի աւելի ինչ խնդրեն յանաւրինացն է...:

Իսկ վեցերորդն. Կատարի սովորութիւն ի ժամանակ հարսանեացն, որպէս և Քրիստոսի՝ ի ժամ խաչելութեանն։ Եւ զի յերեկոյին ժամուն առնեն հալուէս Դ գունով՝ կարմիր և դեղին, կանաչ և սպիտակ։ Եւ զհանդերձն փեսային և հարսին ի վերայ եդեալ տանին նախ ի տուն հարսինն։ Բայց զհարսինն զամենայն ինչ մերկացուցանեն ի նմանէ և ապա զնորն ազգեցուցանեն, իսկ փեսային ոչ հանեն, այլ ի վերայ հնոյն զնորն ազգեցուցանեն...։

194բ Իսկ եւթներորդ. Զի ի ժամ հարսանեացն հրաւիրակ առաքին ի տուն հարսին՝ տալ աւետիս գալոյ հարսանեացն, զոր գեղջուկքն աղուէս կոչեն՝ վասն Թագնարար գալոյն...։

195ա Ութերորդ. Զի սովորութիւն է, զի մինչև ի ժամանակ պսակին գալ և առնել և ուտել՝ է մերձաւորաց փեսային ի տուն հարսին, իսկ յետ պսակին՝ այլ ոչ...։

Իսկ իններորդ. Սովորութիւն է տանել ի դուռն եկեղեցւոյն բազում երգաւք և նուագարանաւք, ծնծղայիւք և քնարիւք և երիվարաւք...։

Իսկ տասներորդ[1]. Սովորութիւն է ի դրան եկեղեցւոյն զինահարել[2] նախ մայրն ի փեսայն և ապա քահանայն զհարսն ի փեսայն և ապա անդրադարձեալ, և երկոքեանն յանձն առնուն...։

195բ Իսկ մետասաներորդ. Սովորութիւն է զի նարա[ւ]ս ոլորեալ կարմիր՝ ընդ բամբակի (բնագրում՝ բանբակի) խառնեալ և երեք (բնագրում՝ երեկ) կցի շարամանեալ, մի կուղն կարմրովն խառն և երկուսն անխառն, միայն բամբակ (բնագրում՝ բանբակ), զոր մանեն փեսեղբայրն և քահանայն, հարսին քոյրն և քահանայն, և նովաւ կապեն զխաչն ի պարանոցն փեսային...։

Իսկ երկոտասաներորդ. Սովորութիւն է, զի արտաքոյ եկեղեցւոյն յանձնեն, և ի մէջ եկեղեցւոյն պսակեն, և արտաքոյ եկեղեցւոյն առնեն զգործ ամուսնութեան...։

Իսկ երեքտասաներորդ. Սովորութիւն է պատարագաւ պսակել ժամամուտ և ամենայն, որ ինչ պատարագին կարգն...։

Իսկ չորեքտասաներորդ. Սովորութիւն [է] պսակ անուանել պսակ դնել ի գլուխ փեսային և հարսինն...։

196ա Իսկ հնգետասաներորդ. Սովորութիւն է սպիտակ հանդերձ փեսային ազգեցուցանել և խաչ զաւտի կապել կարմիր՝ յետոյ և առաջի, մանաւանդ զի յետ ընթերցմանն աւրհնել և զայն ըմպել տալ՝ զկէսն հարսինն և զկէսն փեսային...։

---

1 Հեղինակը սույն կետը ևս 9-րդ է նշանակել, որ վրիպակ սխալ է։ Մենք այն դարձնելով տասներորդ, համապատասխանորեն փոփոխեցինք հաջորդ բոլոր կետերի համարները։

2 Հենց այստեղ է, որ երևում է առևանգման հնագույն ձևի վերապրուկը՝ երիվարներով հարս «առնելը»։ Այս «զինահարելու» (մենամարտելու, կատակախաղի տալու) սովորության ձևերից մեկը 1870 թ. նկարագրել է վանեցի Ա. Ն. Պեյլերյանն իր «Գեղջկական հարսանիք ի Հայաստան» գրքույկում, ուր նա ամբողջ հարսնառը դիտում է իբրև կողմերի մենամարտ — ճակատամարտ։ Հարսնառի մասնակից հեծյալ կամ հետիոտն երիտասարդները փայտերով, սրերով ու վահաններով զինված, կեղծ պատերազմ են մղում աղջկա կողմի (գյուղի) հարսնեառների դեմ (էջ 31—49)։

Երկու դեպքում էլ առևանգման կամ կին աշխատավոր ձեռք բերելու նախնական սովորության փոխարեն հանդես են գալիս արդեն խրախճանական բնույթ ստացած խաղ-զվարճությունները։

Իսկ վեշտասաներորդ. *Զի սուր է քարշեալ յաջմէ և յահեկէ ի հանելն յեկեղեցոյն…։*

Իսկ եւթնեւտասաներորդ. *Զի նստին յաստիճան եկեղեցոյն և ամենեքեան պար առեալ երկրպագեն՝ Թագաւոր զնա կարդալով…։*

Իսկ ութեւտասաներորդ. *Սովորութիւն է այլ ոչ դառնալ ի տուն հ[ար]սին, այլ երթան ի տո[ւն] հօրն փեսային…։*

Իննեւտասաներորդ. *Սովորութիւն է տե[ղ]ի բարձր նստե[լ փե-*
196բ *սային], որ ակներև… տեսանի… ըմել*[1] || *մինչև յերեկոյ, իսկ երեկոյն առաջի բերոցն ուտել սակաւ ինչ… ապա ուրեմն անմտութիւն է փեսային առաջի ժողովրդեանն ուտել ինչ։*

Քսաներորդ. *Զի ե[ւ]թն [օ]րն հարսան[ե]անց, որչափ նստի փեսայն յառաջատան՝ մանկունք նախատինս տան հարսնքուերն…։*

Քսանմէկերորդ. *Զի յետ եւթն աւուր… առնի պսակն և ապա հրա[մայէ մե]րձաւորութեան յութերորդ աւուրն…։*

*Իսկ զի ճանապարհէն կամ յայլ գեղոյ կամ ի միատունն հալածեն, և կայնուն զկիրճս ճանապարհաց, և խնդրեն ինչս և ոչ թողուն մինչև առնուն…*[2]*։*

---

1 Ձեռագրի այս թերթի եզրերի մաշված ու պատռված լինելով՝ որոշ բառեր չեն վերծանվում։

2 Ակնարկված է այն սովորությունը, երբ գյուղերում հարսնառի ժամանակ, հարսին գյուղից դուրս բերելիս, տեղացի երիտասարդները խմբովին մի որևէ նպաստավոր ճանապարհի վրա կանգնեցնում էին հարսնառի մասնակիցներին և խմիչքներ ու խորտիկներ էին պահանջում։ Մերժում ստանալու դեպքում (իսկ դա հաճախ էր պատահում, որովհետև հակառակը ժլատության և ոչ քաջության նշան էր համարվում) աղջկա համայնքակիցները լուրջ կռիվ էին սկսում, որը հնում երբեմն արյունահեղության էր հասնում։